մեց դահլիճը նախորդ գործավարներէն, դուրս ձգելով մի - այն ներքին եւ արտաքին գործավարները, Շիւքրիւ Քայա եւ Րիւշտիւ Արաս: Արտաքին գործավար նշանակուած է Սարաճօղլու, որ նախորդ դահլիճին մէջ կը վարէր դատական գործավարութիւնը:

«Մաթէն»ի թղթակիցը Լոնտոնէն կը գրէ թէ Ըսմէթ Ինէօնիւ վերջերս շուքի մէջ նետուած էր անոր համար որ կը հակառակէր Աթաթիւրքի ռուսասիրական (?) քաղաքականութեան, եւ կը ջատագովէր գործակցութիւն մը Պերլինի հետ: Հիմա, իբրեւ նախագահ Թրքական հանրապետութեան, կ'աւելցնէ նոյն թղթակիցը, Ըսմէթ Ինէօնիւ պիտի աշխատի բարեկամութիւն հաստատել Գերմանիոյ եւ Իտալիոյ հետ, բոլորովին հեռանալով Ռուսաստանէն:

ԸՍՄԷԹԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Նախագահ ընտրուելէ վերջ, Ազգ. Մեծ Ժողովին առջեւ ճառ մը խօսելով՝ Ըսմէթ Ինէօնիւ ըսաւ թէ Թուրքիա կը փափաքի ապրիլ խաղաղութեան մէջ եւ շարունակել իր յառաջդիմական ձեռնարկները, զէնքի ուժով պիտի պատասխանէ ամէն յարձակումի որ կը ձգտի միջամտել երկրին անկախութեան:

ԷՆԿԻՒՐԻ ՊԻՏԻ ԿՈՉՈՒԻ ԱԹԱԹԻՒՐՔ

Ազգ. Մեծ Ժողովը միաձայնութեամբ որոշեց, յաւերժացնելու համար Քէմալ Աթաթիւրքի անունը, մայրաքաղաքը (Էնկիւրի) կոչել Աթաթիւրք:

## Հրեաներուն կացութիւնը Գերմանիոյ մէջ

Ինչպէս գրեցինք, Փարիզի գերմանական դեսպանատան քարտուղարին մահը, իբրեւ հետեւանք Հրեայի մը կատարած մահափորձին, պատճառ դարձաւ որ հակահրէական շարժումը սարսափելի համեմատութիւններ առնէ բովանդակ Գերմանիոյ մէջ: Բազմաթիւ սինակոկներ կրակի եւ վաճառատուներ աւարի տրուեցան: Միւնիխի մէջ նացիները 48 ժամ միջոց տուին Հրեաներուն, հեռանալու համար քաղաքէն: Թէեւ այս որոշումը ոստիկանութեան կողմէ տրուած չէր, բայց եւ այնպէս շատեր լքեցին իրենց տուները եւ հեռացան: Պերլինի մէջ առաջին հալածանքներէն վերջ, երբ քիչ մը հանդարտութիւն տիրեց, տեսնուեցաւ որ հրէական վաճառատուներու վրայ, մեծ մասամբ դուռները եւ ապակեփեղկերը ջարդուած, ազդեր տպուած էին. — «Վարձու է» կամ «Արիական մը ծախու առած է»:

Տոքթ. Կէօպէլս յայտարարութեամբ մը, քիչ մը ուշ, կարգի հրաւիրեց ժողովուրդը եւ հալածանքն ու բարբարոսութիւնը վերջ գտան: Այսուհանդերձ բազմաթիւ Հրեաներ այլեւս անկարելի կը գտնեն մնալ Գերմանիոյ մէջ ու կը հեռանան երկրէն: Կառավարութիւնը հրամայած է դրամատուներուն 30 մարքէն աւելի չտալ մեկնող Հրեաներուն: Միւս կողմէ կը մշակէ օրէնքներ, յատկապէս Հրեաներուն համար, — այսպէս կ'ըսուի թէ ամէն քաղաքի մէջ պիտի հիմնուին «կէթօ»ներ (հրէական թաղ, ուրկէ դուրս ելլել արգիլուած է), անոնց պարէնն անգամ պիտի տրուի չափով, անոնց պիտի արգիլուի կալուածատէր ըլլալ, եւայլն:

— oo —

ՋԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԴՐԱՄԱՏՈՒՆԵՐԸ այսուհետեւ բաց պիտի մնան շաբաթ օրերն ալ մինչեւ կէսօր:

ՅԱՌԱՋԻ հանգանակած գումարը, Չինաստանի հանդիսութեանց համար, հինգշաբթի կը հասնէր 835ի, — վերջին պահուն 10 ֆրանք ղրկած էր նաեւ Լորիս Բաքանեան, եւ 845 ֆրանք, հինգշաբթի, ցանկով միասին փոխադրուեցաւ պատկան նախարարութեան: Անկէ վերջ ստացուած գումարները պիտի վերադարձնենք:

ԱՌԵՒՏՐԱԿԱՆ շրջան ներկայացուցիչները Փարիզի առեւտրական Սենեակին դիմելով՝ բողոքեցին որ օտարականները, առանց իրաւունք ունենալու, շրջուն ներկայացուցիչ դարձած են եւ գաղտնօրէն միջնորդ - առեւտրականի դեր կը կատարեն արտադրող եւ սպառող հաստատութեանց միջեւ: Խոստացուեցաւ պաշտպանել Ֆրանսացի առեւտրական շրջուն ներկայացուցիչներու շահերը:

ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ցնցումներ զգալի եղան Լոնտոնի շարժագրական կայանին մէջ, — կայանին տնօրէնը կ'ըսէ թէ երկրաշարժին կեդրոնը կը գտնուի Պիրմանիոյ մէջ, ուր ցնցումները անախրնթաց սաստիճանի հասած են:

ԱՐԱԲՆԵՐԸ կը սպառնան ընդհանուր ապստամբութիւն յայտարարել եւ կը մերժեն թիզ մը հող տալ որ եւ է կառավարութեան, իբրեւ պատասխան բրիտանական վերջին ծրագրին:

ՄԱՐԱՋԱԽՏ ՊԼԻԽԷՐ կը գտնուի Լուպիանքայի բանտը, ուր նետուած է զոհ երթալով իր նախկին կնոջ մատնութեան, Սթալինի դէմ դաւադրութեան մը ամբաստանութեամբ:

## Մարսիլիոյ հայ ժողովուրդին ուշադրութեան

— oo —

Հայրենակիցներ, — «Նուվէլ Կալըրի»ի ծանր աղէտը, որուն զոհ գացին բազմաթիւ անձեր, պարտականութեան մը առջեւ կը դնէր Մարսիլահայ գաղութը, որպէսզի իր կողմէն ալ ցաւակցութեան հրապարակային արտայայտութիւն մը ընէր:

Այս մտադրութեամբ ալ տեղւոյս Ազգ. Կեդր. Վարչութիւնը դիմած է տեղւոյս նահանգապետարանը, խնդրելով որ՝ զոհերու թաղումին յուղարկաւորութեանը մասնակցելու համար յատուկ տեղ մը տրուի Մարսիլահայ գաղութի ներկայացուցչութեան:

Հարկ եղած արտօնութիւնը ստացուած է արդէն եւ կազմուած է քսան հոգինոց յանձնախումբ մը, որուն մաս կազմելու համար զանազան մարմիններէ հրաւիրուած են ներկայացուցիչներ, որոնք թաղման օրը պիտի ունենան իրենց առանձին տեղը՝ թափօրին մէջ:

Թաղումը պիտի կատարուի 14 նոյեմբեր, երկուշաբթի օր, առաւօտեան ժամը 9·30ին:

Կը խնդրենք հրաւիրուած մարմիններու ներկայացուցիչներէն որ որոշեալ ժամին ներկայ գտնուին Առաջնորդարան, միասնաբար մեղի յառկացուելիք կարգով հետեւելու յուղարկաւորութեան:

Կը թելադրենք նաեւ հայ առեւտրական դասուն, որ իբրեւ ցաւակցութեան արտայայտութիւն՝ իրենց գործատեղին ու խանութները փակեն այդ օրը, ի յարգանս հրդեհի զոհերուն եւ անոնց պարագաներուն:

Արդէն ըստ տեղական մամուլին մէջ երեւցած ծանուցման, պաշտօնատուները փակ պիտի ըլլան, եւ առեւտուրը դադարի պիտի ենթարկուի մինչեւ կէս օր:

Ազգ. Կեդր. Վարչութիւն Մարսէյլի





























Le Gérant : H. STEPHAN
17. Rue Damesme, PARIS (13) A. DER [illegible]

սպաննուեցան կարմիր Սպանիոյ մէջ, կը մնան համր դատախազ-ները ընդդէմ այն տարրերուն, որոնք կը դիմեն քաղաքական ոճիր-ներու՝ արտայայտելու համար իրենց թշնամութիւնը հանդէպ մե-ծագոյն Գերմանիոյ: Ատիկա պատճառ մըն է որ մենք աշխարհի վրայ ամէն կողմ, ուր կ՚ապրին Գերմաններ, կազմենք ազգային համախմբութիւն մը, ճիշդ ինչպէս Գերմանիոյ մէջ, ուր այրերը եւ կիները միացած են՝ արտայայտելով մէկ կամք, վեր բոլոր դա-սակարգերէն:

Դամբանական մը խօսեցաւ նաեւ Ֆոն Ռիպպընթրոփ.

— Սուգի մէջ է բովանդակ Գերմանիան: Թշնամին կը կարծէ թէ ուժն ունի կասեցնելու ճակատագրին ընթացքը: Այդ թշնամին, միջազգային հրէութիւնը, զրպարտութեան ու բամբասանքի, ո-ճիրի եւ անհարեկչութեան կը դիմէ՝ խոչընդոտ կանգնելու համար նացի Գերմանիոյ վերելքին:

Գերման եւ ֆրանսացի բժիշկներու գիտութիւնը, ֆրանսացի նախկին պատերազմիկի մը ընկերական զոհողութիւնը զուր անցան եւ 9 Նոյեմբերին Ֆոն Ռաթ աչքերը փակեց յաւիտենականութեան մէջ:

Ընկե՛ր, կրնաս այլեւս քնանալ հանգիստ: Ցամբարար, բայց սուտ... կը կործանի անհ հին աշխարհը, այլ սակայն կանգուն կը մնայ Գերմանիան: Ոչ մէկ անհարեկչութիւն կրնայ կասեցնել Գերմանիոյ վերելքը: Եթէ, այսօր, աշխարհի վրայ, ատելութեան նոր ալիքներ կը բարձրանան մեզի դէմ եւ սուտերով կ՚աշխատին սրբապղծել մեր զոհերուն յիշատակը, թող չմոռնան որ գայրոյթի փոթորիկ մը ոտքի կը կանգնեցնէ Գերմանիան:

Ֆոն Ռիպպընթրոփ իր դամբանականը աւարտեց այն խօսքով, զոր Հիթլէր արտասանեց Կիւսթլոֆի գերեզմանին վրայ.

— Կը հասկնանք մարտահրաւէրին իմաստը եւ պիտի պատաս-խանենք մարտահրաւէրին:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՐՈՎԱՐՏԱԿ - ՕՐԷՆՔՆԵՐՈՒՆ դէմ ցոյց մը տեղի ունեցաւ Փարիզ, 13րդ Թաղամասին մէջ: Հազարաւոր բանուորներ «էն Թէրնասիոնալ» երգելով ողողեցին Ավընիւ տ՚Իթալին, շատեր կը պոռային.— «Տալատիէն ցիցը հանեցէք»: Ոստիկանութիւնը միջա-մտեց եւ կռիւ մը սկսաւ, որու հետեւանքով շատեր վիրաւորուե-ցան, բայց մօտիկ գեղարանի մը մէջ դարմանուելով տուն ճամ-բուեցան: Ոստիկանները ձերբակալեցին 13 հոգի, եւ ազատ արձա-կեցին՝ ուշ ատեն, երբ խաղաղած էր պողոտան:

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ խնամակալը եւս Լոնտոն մեկնեցաւ: Այս այ-ցելութեան կարեւորութիւնը կը բխի անկէ, որ այս պահուս Լոն-տոնի մէջ Ճորճ Զ. եւ Կարոլ Թագաւորները կը խորհրդակցին Արեւել. Եւրոպայի եւ Պալքաններու քաղաքական կացութեան մա-սին:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՋՐԲԱՇԵԱՆ ընտանիքը կը ծանուցանէ թէ յառաջիկայ կիրա-կի 20 նոյեմբեր, Մարսէյլի Հայոց եկեղեցիին մէջ, տեղի պիտի ունենայ հոգեհանգիստ ողբացեալ ԹՈՎՄԱՍ ՋՐԲԱՇԵԱՆի մահ-ուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին ազգականները, բա-րեկամները եւ հանգուցեալին յիշատակը յարգողները:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Սրտի խորին կսկիծով մեր ցա-ւակցութիւնը կը յայտնենք Գ. Աբ գար Խաչատուրեանի եւ իր պարա-գաներուն, տարաբախտ տիկ. Բե-ՐՈՒՋ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆի դառնաղե-կին մահուան առթիւ:

Տէր եւ Տիկին Մարգար Բարխեան

### Կ՚ՈՒԶՈՒԻ

Կ՚ուզուի կնոջ կօշիկի մոնթ-աճի մը, ապահովուած գործ ամբողջ տարին: Դիմել Մուշեղեանին, 83, Rue d'Aubagne, Marseille:



## ԺՈՒԱՆ ՆԱԶԱՐԵԱՆԻ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ



26 Նոյեմբեր, Շաբաթ երեկոյ ժամը 21ին
Mai on CAVEAU
Salle des quatorsի մէջ
45 Rue de la Boëtie,
Մէթրօ Miromesnil

Կը նուագէ Պախէն, Սէկալ, Ֆըրանքէն, Պրամսէն, Շոփէնէն ինչպէս նաեւ ռուսական եւ սպանիական կտորներ:

Գիներ՝ 10, 15 եւ 25 ֆրանք:

Տոմսերը կը ծախուին այժմէն Maison Caveau եւ գրատուն Հրանտ Սամուէլ:

### Կ՚ՈՒԶՈՒԻ

Գ. ՅԱԿՈԲ ՄԱՐԳԱՐԵԱՆ, վիրաբոյժ - ատամնաբոյժ Թիրանայի մէջ, պէտք ունի կարող ատամնաբոյժ - mécanicienի մը: Պայմաններու մասին դիմել՝ A. MARKARIAN, Chirurgien - Dentiste, Tirana, Albanie:

## Հ. Յ. Դ.

### Փարիզ

ԱՌՆՈՒՎԻԼԻ «Վարդան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը 20 Նոյ., կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին ընկ. Հ. Խարխանի բնակարանը: Զեկոյց Շրջ. ժողովի պատգամաւորի եւ ընտրութիւն կոմիտէի:

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Ս. Մինասեան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը 22 Նոյ., երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, «Հայ Ակումբ»ին մէջ: Օրակարգ՝ զեկոյց Շրջ. ժողովի պատգամաւորի եւ ընտրութիւն կոմիտէի:

### Գաւառ

ՄԱՐՍԷՅԼի «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ժողովը 19 նոյեմբեր, Շաբաթ երեկոյ ժամը 9ին: Զեկոյց Շրջ. ժողովի: Ներկայ կ՚ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը:

ԼԻՈՆԻ Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Նէօվիլի «Երկաթ», Սէն Մորիսի «Ցառաջ», Փոն տը Շէրիի «Մուրատ», Լիոնի «Գայլ Վահան», «Աւիտ Գեւօ» եւ «Մուսա Լեռ» խումբերու ներկայացուցիչները յառաջիկայ կիրակի օր, 20 Նոյեմբեր, կէսօրէ վերջ ժամը 1ին «Զարդարեան» գրադա-րանին մէջ, 181 Քուռ Լաֆայէթ: Խիստ կարեւոր օրակարգ:

ՏԷՍԻՆԻ Կոմիտէի Ընդհ. Անդամական ժողովը 19 Նոյ., Շաբաթ երեկոյ ժամը 6ին: Կարեւոր օրակարգ:

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

Յառաջիկայ դասախօսութիւնը 24 Նոյ., Հինգշաբթի երեկոյ ժամը ճիշդ 21ին, Միութեան կեդրոնը, 8 Ռիւ Փօսիւէ, Փարիզ: Կը դասախօսէ Տոքթ. Ի. ՄԻՆԱՍԵԱՆ: Նիւթ՝ «Ծինկիզխանի պետականու-թիւնը եւ անոր ազդեցութիւնը Ասիոյ եւ Եւրոպայի վրայ»:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՖՐ Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ Մ.ՃԻՒՂԻ

20 Նոյեմբեր կիրակի ժամը 4էն մինչեւ կէս գիշեր VICTOR HUGOի սրահներուն մէջ, 46 bis Rue St. Didier

Métro Trocadero կամ Boissière

Նուագախումբ CARRIO—CANTI

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. ԱՐՄ. ՊԱՐ-ԹԵՒԵԱՆ (ջութակ), Պ. ՏԱՐՕՆԵԱՆ (արտաս.) փոքրիկ ԱՐՄԵՆԻԱ կը պարէ կարապին Մահը եւ վրացի կինտօ՝ ԱՍՍՖԵԱՆԻ:

Ճոխ ու ընտիր պիւֆէ՝ պատրաստուած խաչուհիներու նուէր-ներով: Մուտք 10 ֆրանք:

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

### ԱՆԻԷՌ–ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

19 Նոյ., Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Ընկերվարականներու սրահը 149 bis, Avenue d'Argenteuil, Asnières

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐՈՒՀԻ ՏԻԿ. ՇԱՀԼԱՄԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին

կը մասնակցին Օր. ԿՆԵԱԶԵԱՆ (երգ), Ընկ. ՍՈՒՐԷՆ ՀԻՄԷՆ-ԵԱՆ (ջութակ) եւ սեկզակաւն կարող ուժեր:

Կը մեծարուի թէյ եւ խմորեղէն:

Մուտք 3 ֆրանք, փոքրերու 2 ֆրանք:



### Ընտանեկան թէյասեղան—պարահանդէս

Կազմակերպուած «Փարիզահայ Քնար երկսեռ երգչախումբ»ի կողմէ, 20 նոյեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3էն 8, Բարեգործականի սրահին մէջ, 8: բիւ Պոսիւէ, մէթրօ Կառ տիւ Նոր կամ Փուասոնիէր:

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, արտասանութիւն փանթէզիներ եւ պար: Կը մեծարուի թէյ եւ խմորեղէն:

Մուտք 4 ֆրանք:




Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13) A. DER (AGOPIAN)





**AGENCES:** ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐ

ԼԻՈՆ — LYON: M. Francis COTTON, 68 Avenue Galline, à Villeurbanne, près Lyon. Téléph. Lalande 64-10.

ՄԱՐՍԷՅԼ — MARSEILLE, M. SIMONDI, 17 Allées des Primevères, à Marseille.

րու Դաշնակցութեան հակակշիռէն եւ դառնայ գերմանական քա֊ղաք, 2.— Լեհաստանի տրուած չեխական հողամասին վրայ Գեր֊մանիա չինէ երկաթուղի մը, որ հասնի մինչեւ ռումանական սահ֊մանագլուխ :

Ուրիշ աղբիւր մը կը հաղորդէ, ընդհակառակն.—

Գերման կառավարութիւնը խիստ ծանուցագիր մը տուաւ Լեհաստանի եւ Հունգարիոյ կառավարութեանց, ազդարարելով որ դադրեցնեն ամէն միջամտութիւն Չեխոսլովաքիոյներքին գոր֊ծերուն: Լեհաստան եւ Հունգարիա կը մեղադրուին, թէ Ռութէ֊նիոյ մէջ խռովութիւններ կը փորձեն Փրակայի իշխանութեան դէմ: Կ'ըսուի թէ հակառակ Վիէննայի համաձայնութեան՝ Լե֊հաստան եւ Հունգարիա չեն դադրեցներ իրենց պայքարը, որուն նպատակն է սահմանակից դառնալ Սլովաքիոյ մէջ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Պարոյր Պագըրճեան (Պոլիս), Պ. Լեւոն Պագըրճեան, Տէր եւ Տիկին Վահան Պօղոսեան եւ զաւակունք (Պոլիս), Այրի Տիկին Էքիզեան եւ զաւակունք, Այրի Տիկին Քաջուհի Պագըրճեան եւ զաւակունք (Պոլիս), Այրի Տիկին Պագըրճեան եւ զաւակունք (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Պօշնաքեան եւ զաւակունք (Պոլիս), Տէր եւ Տիկին Եարմաեան իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտ֊նեն ամէն անոնց, որոնք անձամբ, ծաղկեպսակով, նամակով եւ հեռագրով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր, մեծ մօր, զո֊քանչին, հարսին, մօրաքրոջ եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԻՍԿՈՒՀԻ ՊԱԳԸՐՃԵԱՆԻ

մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ, 1938 նոյեմբեր 12ին՝ Մար֊սէյլի մէջ:

**ՓԱՐԻԶԻ ՀԱՅԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ**

Յառաջիկայ դասախօսութիւնը 1 Դեկտ., Հինգշաբթի երեկոյ ժամը ճիշդ 21ին, Միութեան կեդրոնը, 8 Ռիւ Փօսիէ, Փարիզ: Կը դասախօսէ Պ. ՕՆՆԻԿ ՌՈՒԲԷՆ ՊԵՐՊԵՐԵԱՆ: Նիւթ՝ «Հայ Ազգը»:

# "ՎԷՄ"

Քանի մը օրէն լոյս կը տեսնէ ՎԷՄի իԴ թիւը հետեւեալ բո֊վանդակութեամբ.—

Ս. ՎՐԱՑԵԱՆ՝ «Մտածումներ ազգային միութեան եւ կազ֊մակերպութեան մասին»: ԳՆԴ. Տ. ԲԱՂՏԱՍԱՐԵԱՆ՝ «Վանի երկ֊րորդ կռիւները եւ վերջին իշխանութիւնը»: Ռ. ԲԵՐԲԵՐԵԱՆ՝ «Պատրանքների շրջանից» (Դ): Տ. ԴԻՈՅԵԱՆՑ՝ «Հետախոյզի մը յուշերը»: Ս. Օ. ՍԱՐԳԻՍԵԱՆ՝ «Հայոց հարցը իննսունական թուականներուն»: ՍԱՐՈՒԽԱՆ՝ «Յովհ. Թումանեանի յիշատա֊կին»: ՅՈՎՍ. ԱՐՂՈՒԹԵԱՆ՝ «Յովնան Դաւթեան»: Ինչպէ՞ս խոր֊հրդայնացան Ադրբէջանն ու Վրաստանը: ԿԵԱՆՔ ԵՒ ՄՇԱԿՈՅԹ: ԳՐԱԽՕՍԱԿԱՆ: ՅԱՒԵԼՈՒԱԾ՝ Գ. ՄԽԻԹԱՐԵԱՆ՝ «Պրազիլահայ գաղութը»:

ԲԱԺԱՆԵԳԻՆ.— Ֆրանսա եւ Սուրիա տարեկան 60 ֆրանք. Ամերիկա, Բրիտ. Կայսրութիւն եւ Եգիպտոս 4 տոլար, մնացեալ երկիրները՝ 3 տոլար:

Հասցէ՝ S. Vratzian, 13, Rue des Platanes, Plessis - Robinson (S.).

Բաժանորդներէն կը խնդրուի փակել իրենց հաշիւները:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԻՍԻ -ԼԷ - ՄՈՒԼԻՆՈՅԻ Ֆ. Կ. Խա֊չի մասնաճիւղը Ընդհ. Ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամ - անդամուհի֊ները 26 Նոյեմբեր, Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 3ին «Էրիմեան» դպրոցին մէջ:

ՀԱՅ ԿԱՄ. եւ ՄԱՐՏ. Միութիւնը անդամական ժողովի կը հրաւիրէ Փա֊րիզի շրջանի զինակից ընկերները յա֊ռաջիկայ Նոյ. 26ին, Շաբաթ երեկոյ֊եան ժամը 8.30ին Պէլվիլի Թապայի վերնայարկը: Կարեւոր օրակարգ:

ԿՈՉ

ՄԵԾ - ՆՈՐ - ԳԻՒՂՑԻՆԵՐՈՒՆ

Հայրենակից Տէր Վարդան քահա֊նայ Ճամկոչեան քանի մը ամիսէ ի վեր ձեռնարկած է «Մեծ Նոր Գիւղի պատմութիւնը» անուն գրքի մը պատ֊րաստութեան, անոր մէջ պատկերա֊ցնելով գեղի 200 տարուան կեանքը:

Ուստի կը խնդրուի բոլոր Մեծ Նոր գիւղացիներէն եւ հոն պաշտօնավա֊րած ուսուցիչներէն, որ բարեհաճին գիւղի մասին (դէպքերու եւ դէմքե֊րու) տեղեկութիւններ հաղորդել եւ ղրկել հետաքրքրական տեղեկութիւն֊ներ, մինչեւ յառաջիկայ Ապրիլ ամ֊սոյն սկիզբը, ուղղակի Տէր Հօր հասցէին, Père Vartan Jamgotchian, 27 Rue St. Michel, Lyon (Rhone) France:


Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Domesnes — PARIS (13)


## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒՔ

23 Մայիս — 31 Մայիս

ՊԱՆԵԽՕ, Ա. Ի. 75
ՆԱՆԹԵՐ, Մ. Թ. 100
ՃԱՐԱՊԼՈՒՍ, Մ. Պ. 75
ՍԷՎՐԱՆ, Նիշ. 75
ՎԻԼԻԷ, Վ. Ա. 40
ԼԱ ՍԷՅՆ, Ս. Կ. 40
ՎԱԼԱՆՍ, Ա. Տէր Ս. 100
ԱԹՐԱՋՊՈՒՐԿ, Եօղ. Պ. 40

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Լիոնի Շրջ. Կոմիտէն բո֊լոր խումբերու կողմէ իր խորին ցա֊ւակցութիւնը կը յայտնէ ընկեր Տիգ֊րան Չէքիճեանի եւ ընտանեկան պարա֊գաներուն, իր եղբօր՝ ՎԱՂԱՐՇԱԿ ՉԷՔԻՃԵԱՆԻ մահուան առթիւ:



# Հ. Յ. Դ.

**Գաւառ**

ՄԱՐՍԷՅԼԻ «Մարօ» խումբի ժողովը 27 Նոյ., կիրակի կէսօրէ ետք ժամը ճիշդ 3ին «Ցաքրիկեան» սրահին մէջ, 5 Ռիւ Լ'Էքիփ: Օրակարգ՝ զեկու֊ցում Շրջ. ժողովի: Ներկայ պիտի ըլլայ Շրջ. կոմիտէի Ներկայացուցիչը: Կը խնդրուի ճիշդ ժամին ներկայ գտնուիլ:

ՍԷՆ ՄՈՐԻՍԻ «Յառաջ» խումբի ընդհ. ժողովը 26 Նոյ., Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 3ին սովորական հաւաքատեղին, խիստ կարեւոր օրակարգ:

ՎԻԷՆԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 27 Նոյեմբեր, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին «Խաժակ» ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՄՈՆՓԷԼԻԷԻ «Իշխան» խումբի ժողովը 27 Նոյ., կիրակի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

— oo —

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ**

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԵՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՇՐՋԱՆԻ ԲՈԼՈՐ ԵՆԹԱԿՈՄԻՏԷՆԵՐՈՒՆ ԵՒ ԽՈՒՄԲԵՐՈՒՆ

27 ՆՈՅԵՄԲԵՐ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.30ԻՆ

ՔՈԼԻԶԷԻ ՇՔԵՂ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ, 21 ՊՈՒՎԱՐ ՏԻԿՈՄԻԷ

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. **Յ. ՊԸՊԻԿԵԱՆ**

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ **Մ. ՎՐԱՑԵԱՆ** ԵՒ **Հ. ՄԻՍԱՔԵԱՆ**

Կ'երգէ Օր. ՊԵՐՃՈՒՀԻ ԳԷՈՐԳԵԱՆ (Մարսէյլի Քոնսէրվաթուա֊րէն), Օր. ՀԵՐԱ ԳՄԲԸԼԵԱՆ, պիտի երգէ ու պարէ ՕՏԷԹ ՍԻՄՕՆ: Կ'արտասանեն ընկերներ՝ Մ. ԴԱՒԻԹԵԱՆ, ՎԱՂԱՐՇԱԿ ՏԷՐ-ՎԱՐԴԱՆԵԱՆ, Ս. ԲՐՈՒՏԵԱՆ եւ Օրիորդ ԳԱՍՊԱՐԵԱՆ:

Կը նուագեն ջութակահար Պ. Ս. ՉԷՕՐԷՔՃԵԱՆ, եւ Պ. ԼԵՒՈՆ ՂԵ֊ՒՈՆԴԵԱՆ:

Հանդէսը կը վերջանայ ժամը ճիշդ 12ին

Ծախսերու մասնակցութեան համար 5 ֆրանք:

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՇԱՎԻԼԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ԵՒ Կ. ԽԱՉԻ ՄԻՋԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ Ի ՆՊԱՍՏ ՇԱՎԻԼԻ ԴՊՐՈՑԻՆ

26 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ լոյս

Մէզի, Սալ տէ Ֆէթի սրահը, Ռիւ տէ գ'Եգօլ (Մարշէին հետեւ)

«Րաֆֆի» երգչախումբ, «Եփրատ» նուագախումբ, հայկական պարեր:

Կը ներկայացուի «ՕՏԱՐԻՆ ՅԱՒԸ» (Աշուղ Ղազարէ)

Աժան պիւֆէ Մուտք 5 ֆրանք

Անձել թիւ 1 օթոպիւս, իջնել Մէրի





# "ԱՆՈՒՇ" ՕՓԵՐԱ 27 ՆՈՅ. ԿԻՐԱԿԻ

*Mutualitéի մէջ*

ԱՆՈՒՇի դերը կը կատարէ Օր. ԱՍԻԱ ԿՈՍՏԱՆԵԱՆ, ծանօթ արուեստագիտուհին որ երկար ատեն երգած է հնդկական եւ անգ֊լիական ռատիօ-կայաններէն, եւ մասնակցած եւրոպական թատ֊րոններու, մեծ յաջողութեամբ:



## AGENCES: ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐ

ԼԻՈՆ — LYON: M. Francis COTTON, 68 Avenue Galline; à Villeurbanne, près Lyon. Téléph. Lalande 64-10.

ՄԱՐՍԷՅԼ — MARSEILLE, M. SIMONDI, 17 Allées des Primevères, à Marseille.

